## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, Հեռախոս՝ 2—52—78



# ԲՆԱԿԱՆ ԳԱԶԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ

Ե. ԱՍԾԱՏՐՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման կոնտրոլ թվերում, որը հաստատված է ՍՄԿՊ XXI համագումարի կողմից, նախատեսված է գազի արդյունահանումը և արտադրությունը յոթնամյակում ավելացնել հինգ անգամ, հասցնելով այն մինչև 150 միլիարդ խորանարդ մետրի: Գազային արդյունաբերության զարգացման այդպիսի քանակությունը հնարավորություն է տալիս բավարարել գազի նկատմամբ ինչպես քիմիական հումքի, այնպես էլ բնակչության կոմունալ-կենցաղային սպառման կարիքները:

Ի կենսագործումն XXI համագումարի դիրեկտիվների, ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՍ







Մինիստրների Սովետի որոշմամբ յոթնամյակում մեր երկրում կառուցվելու են գազամուղի մի շարք խոշոր մագիստրալներ՝ 26 հազար կիլոմետր ընդհանուր երկարությամբ։ Գազամուղի այդ գծերից մեկը հանդիսանում է Ղարադաղ-Աղստաֆա-Թբիլիսի, Աղստաֆա-Երևան մագիստրալային գիծը։

Ներկայումս շինարարական-մոնտաժային լայն աշխատանք է ծավալվում գազամուղի կառուցման բոլոր տեղամասերում և անհրաժեշտ միջոցներ են ձեռք առնվում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 42-րդ տարեդարձին՝ 1959 թվականի նոյեմբերի 7-ին, ավարտել գազամուղի շինարարությունը մինչև Թբիլիսի։ Այդ ժամանակամիջոցում նմանապես գազիֆիկացման են ենթարկվելու Ադրբեջանական ՍՍՌ-ի և Վրացական ՍՍՌ-ի մի շարք խոշոր քաղաքներ, որոնք գտնվում են վերը նշած մագիստրալային գծի վրա։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից հաստատված պլանի համաձայն նախատեսված է Երևանին բնական գազ տալ 1960 թվականի առաջին կիսամյակում։ Գազամուղի այդ տեղամասը իր ռելեֆով հանդիսանում է ամենաբարդ գծերից մեկը Սովետական Միությունում։ Չնայած



դրան, շինարարների և մոնտաժողների կոլեկտիվը, գիտակցելով հանձնարարված գործի նկատմամբ իրենց ազնիվ պարտքն ու բարձր պատասխանատվությունը, պարտավորվել է գազամուղի շինարարությունը ավարտել սահմանված ժամկետից 4—5 ամիս շուտ և Երևանին բնական գազը տալ 1960 թվականի սկզբին։ Դրա համար էլ այժմ Երևանում ամենուրեք լայն աշխատանք է ծավալված բնակարանային, կուլտ-կենցաղային և արդյունաբերական օբյեկտների գազիֆիկացման ուղղությամբ։

Երևանի գազիֆիկացման հետ միասին, հաստատված պլանին համապատասխան, 1960—1961 թվականներին պետք է գազիֆիկացման ենթարկվեն Լենինականը, Կիրովականը, ինչպես նաև այն քաղաքներն ու բնակավայրերը, որոնք գտնվում են գազամուղի մագիստրալային տրասայի մոտ, օրինակ՝ Իջևանը, Դիլիջանը, Սևանը, Հրազդանը, Լուսավանը, Արզնին և մի շարք այլ բնակավայրեր։ Ռեսպուբլիկայի մյուս բնակավայրերը, որոնք գտնվում են մագիստրալային գծից հեռու, գազով ապահովելու համար նախատեսվում է Երևանում, Ղափանում և Ալավերդում կառուցել կայաններ հե-

ղուկ գազի պահպանման և բաժանման համար։

Բնական գազը ամենից առաջ օգտագործվելու է կենցաղային կարիքների համար որպես վառելանյութ։ Ինչպես հայտնի է Հայաստանը չունի վառելանյութի անհրաժեշտ բազա և ամեն տարի մյուս տնտեսական շրջաններից տասնյակ հազարավոր տոննաներով ածուխ, մազութ ու նավթ է ներմուծում։ Նախագծող կազմակերպությունների հաշվարկումներով բնական գազ ստանալով մեր ռեսպուբլիկան կազատվի կոմունալ-կենցաղային կարիքների ջեռուցման համար անհրաժեշտ ներմուծումից՝ մոտ 800 հազար տոննա ածուխից, 450 հազար տոննա մազութից, 80 հազար տոննա նավթից, 140 հազար տոննա վառելափայտից։

Բնակարաններում գազը որպես վառելիք օգտագործելով նշանակալից չափով կբարելավվի քաղաքների և բնակավայրերի սանիտարա-հիգիենիկ պայմանները, կթեթևացնի տնային տնտեսուհիների և հնոցային սարքավորումները սպասարկող ծառայողների աշխատանքը։ Բնական գազը առողջապահական, հասարակական սննդի, դպրոցների, մանկապարտեզների և ուրիշ այլ օբյեկտների կոմունալ-կենցաղային կարիքնե-



րի համար օգտագործումը բացառիկ կարևոր նշանակություն ունի։ Շնորհիվ գազի բարձր ջերմային կալորայնության, կարգավորման հարմարավետության, նշանակալիորեն կրճատում է ջեռուցման պրոցեսների և սննդի պատրաստման ժամանակը։

Բնական գազը վառելիքի ամենաէժան տեսակն է։ Հաշվարկումները ցույց են տվել, որ նավթի և էլեկտրականության փոխարեն գազի կիրառումը յուրաքանչյուր ընտանիքին միջին հաշվով տարեկան կարող է տալ 350—400 ռուբլու խնայողություն։ Նմանապես խոշոր խնայողություն կարող են տալ բնակելի շենքերի կաթսայատները՝ ածխի օգտագործումից բնական գազին անցնելու դեպքում։ Գազը լայն կիրառություն է գտնելու նաև գյուղատնտեսության մեջ՝ ջերմոցները տաքացնելու, գյուղատնտեսական մթերքները մշակելու համար և այլն։

Սակայն կենցաղային և կոմունալ կարիքների համար պահանջվում է ոչ այնքան շատ գազ, ռեսպուբլիկայի ստացած գազի ընդհանուր քանակության 12 տոկոսից ոչ ավելի։ Էժանագին բնական գազի հսկայական ռեսուրսները լայն կիրառություն կգտնեն քիմիական արդյունաբերության մեջ՝ որպես հումք։

1958 թվականի մայիսին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը միջոցառումներ մշակեց երկրում քիմիական արդյունաբերությունը, հատկապես սինթետիկ նյութերի և նրանցից ստացվող իրերի արտադրությունը զարգացնելու ուղղությամբ՝ բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար։ Խնդիրն այն է, որպեսզի յոթնամյակի ընթացքում բնակչությանը լի ու լի բավարարել արհեստական նյութերից պատրաստված, որակի տեսակետից էլ բնական հումքին շատ անգամ գերազանցող ու էժան կոշկեղենով, հագուստեղենով և տնային գործածության այլ ապրանքներով։ Ելնելով այդ խնդիրներից Հայկական ՍՍՌ-ում բնական գազը որպես էժան քիմիական հումք լայն կիրառություն է գտնելու։

Ներկայումս քիմիական արդյունաբերությունը ռեսպուբլիկայի արդյունաբերության հիմնական ճյուղերից մեկն է։ Հիմնականում այն խարսխված է կարբիդ-կալցիումից ստացվող ացետիլենի օրգանական սինթեզի վրա։ Սակայն կարբիդ-կալցիումի արտադրությունը շատ աշխատանք է պահանջում և մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա է հարկավոր։ Դրա համար էլ գազի ստացման



կապակցությամբ, այն ձեռնարկություննըրը, որոնք աշխատում են կարբիդ-կալցիումի տեխնոլոգիական հումքի բազայի վրա, աշխատելու են բնական գազով։ Գազից ըստացվող ացետիլենը երկու անգամ էժան է լինելու քան այն, որ ներկայումս ստացվում է։ Միաժամանակ զգալի քանակությամբ էլեկտրաէներգիա կտնտեսվի։

Այսպիսով, արտադրությունը հումքի նոր տեսակով աշխատելու կապակցությամբ, ըզգալի չափով կընդարձակվի սինթետիկ կաուչուկի, վինիլացետատի և դրանցից ստացվող քացախաթթվի արտադրությունը։ Բնական գազի օգտագործումից ստացվող քացախաթըթվի բազայի վրա ստեղծվելու են նոր տեսակի իրերի՝ ացետիլցելյուլոզային և նրանից էլ ացետատային մետաքսի արտադրությունը։

Բնական գազի բազայի հիման վրա ռեսպուբլիկայում ստեղծվելու է պոլիքլորվինիլային ձյութերի խոշոր արտադրություն, որոնք ծառայելու են պլաստմասսաների արտադրություն կազմակերպելու համար։ Պլաստմասսաներից պատրաստվելու են բազմատեսակ իրեր, որոնք ծառայելու են էլեկտրա-տեխնիկական ու քիմիական արդյունաբերության, մեքենաշինության, ինչ-

պես նաև տնային գործածության իրերի կարիքների համար։

Բնական գազը կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսության կարիքների համար պարարտանյութերի արտադրության ավելացման գործում։ Գազի ստացման կապակցությամբ նախատեսված է զգալի չափով ավելացնել սինթետիկ ամոնիակի և նրա բազայի վրա ամոնիակային պարարտանյութերի արտադրությունը։ Գյուղատնտեսության հետագա զարգացման համար այդ արտադրության ընդլայնման խոշոր օգտակարության հետ միասին, ամոնիակի արտադրության նոր տեխնոլոգիային անցումը հնարավորություն կտա խնայել զգալի քանակությամբ էլեկտրաէներգիա և այն գործադրել ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության այլ կարիքների վրա։

Քիմիական արդյունաբերության նախատեսված զարգացումը ռեսպուբլիկային հնարավորություն կտա մեծ քանակությամբ ավելացնել ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը, ընդլայնել սինթետիկ նյութերից ստացվող բարձրորակ և միաժամանակ էժան իրերի ասորտիմենտը։ Բնական գազի օգտագործումը նմանապես հնարավորություն կտա դադարեց-



նել կարբիդ-կալցիումի արտադրությունը ռեսպուբլիկայում, որը արդյունաբերության մեջ կիրառվում է որպես քիմիական հումք։ Դա հնարավորություն կտա զգալի չափով խնայել էլեկտրաէներգիան և կրճատել Սևանա լճից բաց թողնվող ջրերը։ Բնական գազի կիրառման կարևոր խնդիրներից մեկն էլ դա էներգետիկ նպատակներով նրա օգտագործումն է։ Արդյունաբերության բուռն աճը և 1965 թվականին Սևանից բաց թողնվող ջրերի զգալի կրճատման անհրաժեշտությունը մեզ հարկադրում է նոր աղբյուրներ որոնել, որի բազայի հիման վրա հնարավոր լինի զարգացնել ռեսպուբլիկայի էներգետիկան։ Այդպիսի աղբյուր է հանդիսանում բնական գազը։

Նախատեսված է Ղարադաղից ստացվող բնական գազի բազայի վրա Երևանում, Կիրովականում և Հրազդանում կառուցել ջերմաէլեկտրային կայաններ, որոնք էլեկտրաէներգիա մատակարարելու հետ միասին անհրաժեշտ բազա են հանդիսանալու վերոհիշյալ քաղաքների արդյունաբերական ձեռնարկությունները տեխնոլոգիական շոգիով և տաք ջրով ապահովելու համար։ Միաժամանակ շոգին և տաք ջուրը օգտագործվելու է բնակ-

չության կոմունալ և կենցաղային կարիքների համար։

Այսպիսով մեր ռեսպուբլիկայի քաղաքների գազիֆիկացիան խոշոր նշանակություն ունի էներգետիկայի, քիմիական արդյունաբերության, հատկապես սինթետիկ նյութերի և պլաստմասսաների հետագա զարգացման գործում։ Դա կրկին անգամ հաստատում է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության անդուլ հոգատարությունը բնակչության աճող կենցաղային պահանջմունքները բավարարելու, նրա կենսամակարդակը բարձրացնելու, մեր հայրենիքի քաղաքների և բնակավայրերի սանիտարական դրությունը արմատապես բարելավելու մասին։

Ընթացիկ տարում գազամուղի կառուցման և գազիֆիկացիայի համար առանձնացված են բոլոր անհրաժեշտ միջոցները՝ մեխանիզմներ, խողովակներ և այլ նյութեր։

Մեր ռեսպուբլիկայի պարտիական ու սովետական կազմակերպությունների, բոլոր աշխատավորների խնդիրն է. մշտական ու անհրաժեշտ օգնություն ցույց տալ գազամուղի շինարարությանը, պատվով և ժամանակին ավարտել այն։

---

## ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Ոչ թե տարիներ, այլ ամիսներ են անցել այն ժամանակից, երբ մեր երկրում ծավալվեց կոմունիստական աշխատանքի բրիգադայի և հարվածայինի կոչում ստանալու շարժումը։ «Աշխատել, սովորել և ապրել կոմունիստաբար» այս խոսքերով գրված պանծալի դրոշի ներքո համախմբվել և պայքարում են տասնյակ հարյուրավոր բրիգադաներ, տեղամասեր, ցեխեր, կոլեկտիվներ, որոնցում ընդգրկված են միլիոնավոր բանվորներ ու կոլտնտեսականներ։

Մոսկվա-Ռյազան երկաթուղու Մոսկվա-Սարտիրովոչնայա դեպոյի ջերմաքարշանորոգման ցեխի կոլեկտիվում ծնունդ առած կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման լուրը իսկույն հասավ և ջերմ հավանության արժանացավ մեր մեծ երկրի արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի, կառույցների, կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողների կողմից։

Մոսկվայի երկաթուղայինների օրինակով մեր ռեսպուբլիկայում նույնպես բուռն թափով ծավալվեց կոմունիստաբար աշխատելու շարժումը։

Այժմ մեր ռեսպուբլիկայում կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչում ստանալու համար պայքարում են ավելի քան 700 կոլեկտիվներ, որոնցում ընդգրկված են 18 հազար մարդ։ Շուրջ 500 բանվորներ ու կոլտնտեսականներ պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար։ Կոմունիստական աշխատանքի բրիգադայի պատվավոր կոչմանն են արժանացել 39 կոլեկտիվ։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաներն ու հարվածայինները՝ մեր երկրի իսկական հայրենասերներն են, որոնք քայլում են կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի առաջին շարքերում։

Ահա թե ինչպես ծագեց կոմունիստական մրցության միտքը և այն ինչպես գործի վերածվեց Կիրովականի մեքենաշինական գործարանի ձուլող-կաղապարող ցեխի Բորիկ Սարգսյանի ղեկավարած բրիգադայում։

Այդ բրիգադան ռեսպուբլիկայում առաջիններից էր, որն արձագանքեց մոսկվացիների հայրենասիրական նախաձեռնությանը։



Այդ տեղի ունեցավ անցյալ տարվա նոյեմբեր ամսվա սկզբներին։ Գործարանի ձուլող-կաղապարող ցեխի կոմերիտական երիտասարդական բրիգադայի անդամները հավաքվել էին քննարկելու կոմունիստական մրցության պարտավորությունները։ Այստեղ էին՝ բրիգադիր Բորիկ Սարգսյանը, ձուլողներ՝ Ցրունզիկ Ջիլավյանը, Խաչիկ Մելքոնյանը, Հրանտ Փիրումյանը և Մանուկ Եղիազարյանը։

Այդ հնգյակին հուզում էին մի շարք հարցեր՝ ինչպե՞ս ընդօրինակել Մոսկվայի երկաթուղայինների հայրենասիրական նախաձեռնությունը, ինչպիսի արժանավայել գործերով նշել ՍՄԿՊ XXI համագումարը, ինչպիսի՞ պարտավորություններ ստանձնել նախահամագումարյան մրցությունում։ Այն միտքը, թե այժմ գլխավոր խնդիրը հանդիսանում է պայքարը աշխատանքի ամենաբարձր արտադրողականության համար, ինչպես նաև աշխատանքում և կենցաղում կոմունիստական վերաբերմունք ցուցաբերել, —ջերմորեն պաշտպանում էր բրիգադայի յուրաքանչյուր անդամ։ Բրիգադայի անդամներն սկսեցին պարտավորություններ ստանձնելու մասին կոնկրետ առաջարկություններ անել։ Երբ ամփոփեցին բոլոր ա-

ռաջարկությունները, հայտնի դարձավ, որ բրիգադան ստանձնում է բոլորովին նոր պարտավորություններ, որոնք արմատապես տարբերվում են նախորդից։ Նոր պարտավորությունն սկսվում է հետևյալ խոսքերով՝ «Աշխատել, սովորել և ապրել կոմունիստաբար», որին հետևում են կոնկրետ կետեր՝

«Յոթնամյա պլանը կատարել 5 տարում։

Մինիմումի հասցնել խոտանը։

Բրիգադայի յուրաքանչյուր անդամ տարեկան պետք է տնտեսի 7,5 տոննա չուգուն և 75 կգ. կոքս։

Բրիգադայի ամեն մի անդամ 1959 թվականի ընթացքում ձեռք կբերի մեկ լրացուցիչ մասնագիտություն։

Կյանքի հետ դպրոցի կապը ամրապնդելու նպատակով, ենթաշեֆ դպրոցի բարձր դասարանցիների 5 աշակերտի մինչև 1959 թվականի սեպտեմբեր ամիսը դարձնել երրորդ կարգի ձուլող-կաղապարող։

Մինչև պարտիայի XXI համագումարի բացման օրը կարգի բերել ենթաշեֆ Բզովդալ գյուղի կոլխոզային արհեստանոցը, համալրելով այն վերանորոգված երկու խառատային հաստոցներով։

Հինգ տարվա ընթացքում բրիգադայի 4 անդամները ձեռք կբերեն միջնակարգ կամ



միջնակարգ-մասնագիտական կրթություն, իսկ մեկը կավարտի հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություն։

Ամեն կերպ պայքարել անցյալի մնացուկների դեմ, թույլ չտալ հակահասարակական արարքներ։

Ակտիվորեն մասնակցել հասարակական աշխատանքներին։

Լինել օրինակելի աշխատանքում, ուսման մեջ և կենցաղում»։

Բորիկ Սարգսյանի բրիգադայի այդ նախաձեռնությունը քննարկվեց և հավանության արժանացավ գործարանի պարտբյուրոյի և կոմերիտական կազմակերպության կոմիտեի կողմից։

Բրիգադայի անդամները գործի անցան, նրանք ձեռնամուխ եղան ստանձնած պարտավորությունների կատարմանը։

Անցած 6 ամսվա ընթացքում բրիգադան արտադրական պլանները կատարել է 248,7 տոկոսով, զգալի չափով խնայելով չուգուն և կոքս։ Այժմ բրիգադան աշխատում է 1960 թվականի հաշվին։ Խոտանը նախատեսված 5 տոկոսից հասցվել է 1—1,5 տոկոսի։ Բրիգադայի անդամներից երկուսը ձեռք են բերում խառատի, երկուսը՝ փականագործի, իսկ մեկը՝ զոդողի մասնագիտություն։ Են-

թաշեֆ դպրոցի 5 աշակերտներ արդեն ինքնուրույն կերպով կարողանում են ձուլել և կաղապարել։ Նրանք ստացել են ձուլողի 3-րդ կարգի որակավորում։

Նախատեսված ժամկետում կատարվել է նաև ենթաշեֆ կոլտնտեսության վերաբերյալ պարտավորությունը։ Բրիգադայի 4 անդամներ պարտավորվում են այս ուսումնական տարում սովորել երեկոյան բանվորական դպրոցում, իսկ Ֆրունզիկ Ջիլավյանը, որը ունի միջնակարգ կրթություն՝ պատրաստվում է ընդունվել հեռակա ինստիտուտը։

Դրանով չեն սահմանափակվում Բորիկ Սարգսյանի ղեկավարած բրիգադայի գործերը։ Բրիգադայի բոլոր անդամները քաղաքային կուլտուրայի համալսարանի ունկնդիրներ են։ Ժողովրդական դրուժինաների շարքերում նրանք ակտիվորեն մասնակցում են քաղաքի հասարակական կարգի պահպանությանը, նրանց միջև ամրապնդվել են փոխադարձ ընկերական հարաբերություններ ոչ միայն աշխատանքում, այլև կենցաղում, կյանքում։

Այդ համեստ և ընկերասեր կոլեկտիվի անդամները սիստեմատիկաբար իրենց ընկերների հետ միասին հաճախում են կինո, թատրոն, կազմակերպում էքսկուրսիաներ։



Բնորոշն այն է, որ յուրաքանչյուրն իրեն պատասխանատու է զգում կոլեկտիվի, կոլեկտիվը՝ յուրաքանչյուրի արարքի համար։

Ուսանելի փորձ են ձեռք բերել նաև Հրաչիկ Հլոյանի (Երևանի նուրբ բրդյա մահուդի գործարան), Մարիետա Դարբինյանի (Երևանի էլեկտրա-ճշգրիտ չափիչ գործիքների գործարան), Սմբատ Շարոյանի (Լենինականի գուլպայի գործարան) և մի շարք բրիգադներ, որոնք արդեն արժանացել են կոմունիստական աշխատանքի բրիգադայի բարձր կոչմանը։

Ահա այդ և մի շարք ուրիշ՝ կոմունիստական աշխատանքի բրիգադայի պատվավոր կոչումը կրող կոլեկտիվների, ինչպես նաև կոմունիստական աշխատանքի հարվածայինների փորձն է, որ մեր ագիտատորները իրենց ամենօրյա բացատրական աշխատանքում պետք է մասսայականացնեն և ծավալեն այդ հայրենասիրական շարժումը մեր ռեսպուբլիկայում։

Մարդու բազմակողմանի զարգացումը, որը կհանգեցնի նրա հոգևոր և ֆիզիկական բոլոր ուժերի ծաղկմանը, լավագույն կերպով կնպաստի մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերության վերացմանը։



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ ՆՅՈՒ-ՅՈՐՔՈՒՄ

Ֆ. ԻՎԱՆՈՎ

Նյու-Յորքի կենտրոնում, Քրիստափոր
Կոլումբոսի անունը կրող հրապարակում, ո-
րը զարդարված է Ամերիկան հայտնագոր-
ծած հռչակավոր ծովագնացի կոթողով, ձըգ-
ված է առանց լուսամուտների գորշավուն
մի շենք: Այդ «Կոլիզեյն» է վիթխարագույն
ցուցահանդեսային շենքը ԱՄՆ-ում: Շեն-
քի մուտքի վրա նեոնե մեծ տառերով գրված
է՝ «Սովետական Միության գիտության,
տեխնիկայի և կուլտուրայի ցուցահանդես:
30 հունիսի-10 օգոստոսի»:
Այժմ Կոլումբոսի հրապարակը Նյու-Յոր-
քի ամենամասսայական տեղերից մեկն է: Ա-
ռավոտից մինչև երեկո այստեղ չի լռում
մարդկային հեղեղի բազմաձայն աղմուկը,
հավաքվում են մարդկային շատ բազմու-
թյուններ: Ու՞մ ասես չես հանդիպի այդտեղ՝
բանվորներ և ֆերմերներ, խոշոր բիզնես-
մեններ և մանր առևտրականներ, գիտնա-



կաններ ու նոտարներ, ուսանողներ և տնա-
յին տնտեսուհիներ, հոգևորականներ և դըպ-
րացականներ... Նրանցից շատերը եկել են
Սան-Ֆրանցիսկոյից, Դետրոյտից, Չիկագո-
յից, Պիտտսբուրգից, Նոր Օրլեանից, Բոս-
տոնից, փոքր քաղաքներից ու գյուղերից,
որոնք ցրված են Միացյալ Նահանգների լայ-
նատարած տերիտորիայում: Բոլոր այդ մար-
դիկ ձգտում են տեսնել սովետական ցուցա-
հանդեսը, ծանոթանան ամերիկացիների
համար անսովոր սոցիալիզմի երկրի հետ:
Երկար տարիներից հետո այդ առաջին և
սովետական մեծ ցուցահանդեսն է ԱՄՆ-ում:
Վերջին անգամ այստեղ ՍՍՌՄ-ն իր հաջո-
ղությունները ցուցադրել է 1939 թվականի
Նյու-Յորքի միջազգային ցուցահանդեսում:
Այդ ժամանակվանից անցել է մոտ քսան
տարի: Այդ ժամանակաընթացքում շատ է
փոխվել աշխարհը, վիթխարի փոփոխու-
թյուններ են տեղի ունեցել նաև Սովետա-
կան երկրում: Զարմանալի չէ, որ ամերիկա-
ցիները սովետական ցուցահանդեսի նկատ-
մամբ այդպիսի մեծ հետաքրքրություն են
ցուցաբերում: Այդ ցուցահանդեսը կազմա-
կերպվել է 1958 թվականի հունվարին
ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի կառավարությունների
միջև կուլտուրայի փոխանակության մասին

կնքված համաձայնագրի հիման վրա։ Այդ համաձայնագրին համապատասխան հուլիսի 25-ին Մոսկվայում բացվեց ամերիկյան ազգային ցուցահանդեսը։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովը Նյու-Յորքում բացված սովետական ցուցահանդեսի կապակցությամբ արած իր ելույթում հայտարարեց՝

«ՍՍՌՄ կառավարությունը հույս ունի, որ ցուցահանդեսների փոխանակումը մեր երկու երկրների ժողովուրդներին կօգնի ավելի մոտիկից ճանաչել միմյանց, իսկ դա իր հերթին, անկասկած, կնպաստի Միացյալ Նահանգների և Սովետական Միության փոխադարձ հասկացողության բարելավմանը։ Փոխադարձ հասկացողության հաջողությունը և բարեկամական հարաբերությունների հաստատումը մեր երկրների միջև լավագույն երաշխիք է ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության համար»։

Ի՞նչ են տեսնում այցելուները Նյու-Յորքի սովետական ցուցահանդեսում։

Ցուցահանդեսի առջև պատասխանատու և պատվավոր խնդիր է դրված՝ ծանոթացնել ամերիկյան ժողովրդին Սովետական Միության կյանքի հետ, ամերիկացիներին պատմել այն մասին, թե ինչպես են սովետական



մարդիկ ապրում, աշխատում, հանգստանում, ինչպիսի հաջողություններ ունեն նրանք գիտության, տեխնիկայի, կուլտուրայի ասպարեզում, ժողովրդական բարեկեցության աճման բնագավառում, Սովետական երկրի առաջ ինչպիսի հեռանկարներ է բաց անում ՍՄԿՊ XXI համագումարի կողմից ընդունված յոթնամյա պլանը։

Առաջինը, որ մարդու ուշադրությունը գրավում է, դա ցուցահանդեսի կենտրոնական դահլիճում դրված երկրի երեք սովետական արհեստական արբանյակների մոդելներն են և կոսմիկական հրթիռների վերջին աստիճանները, որոնց մեր գիտնականները այս տարվա հունվարին բաց են թողել դեպի լուսին և որոնք դարձել են արեգակնային սիստեմի արհեստական մոլորակներ։

Երկրի և Արևի արհեստական արբանյակները ցուցահանդեսում ներկայացված են բնական մեծությամբ, դա ամենավառ և ամենամեծ համոզիչ վկայությունն է ամբողջ աշխարհի կողմից ճանաչված սովետական գիտության հոչողության մասին, որ գիտության բազմաթիվ ճյուղերում գրավել է առաջին տեղը՝ աշխարհում։

Սովետական Միությունը արևմտյան տերություններից առաջ է անցել ատոմային է-

ներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու բնագավառում։ Այդ ակնառու կերպով համոզում են «Ատոմը խաղաղության համար» բաժնի էքսպոնատները, ամենախոշորներից մեկը ցուցահանդեսում։ Ամեն օր հազարավոր այցելուներ կանգ են առնում այստեղ, աշխարհում առաջին ատոմային «Լենին» սառցահատի մոդելի մոտ, պատրաստված իր բնական մեծության 1/25 մասի չափով։ Նրանք հետաքրքրությամբ են դիտում ՍՍՌՄ-ում գործող և կառուցվող ատոմային էլեկտրակայանները, տարբեր տիպերի ատոմային հրթիռները։ Այցելուները ծանոթանում են աշխարհում ամենահզոր սինխրոֆազոտրոնի հետ, որը այստեղ ներկայացվել է իր բնական մեծության 1/50 մասի չափով։

Հարուստ և հետաքրքիր է սովետական ռադիոէլեկտրոնիկայի հաջողություններին նվիրված ցուցահանդեսի բաժինը։ Այստեղ ցուցադրվում են բարդ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, էլեկտրավակումային կիսահաղորդիչ սարքեր և այլն։ Այցելուները երկար ժամանակ նայում են ռադիոյի միջոցով կառավարվող նորագույն օդանավակայանի մեծ մակետին, ինքնաթիռների շարժիչ ֆիգուրաների հետ։



Ցուցահանդեսի ամենաընդարձակ բաժինը պատմում է արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության մեջ գիտության և տեխնիկայի նորագույն հաջողությունները օգտագործելու մասին։ Այստեղ կարելի է տեսնել Ստալինգրադի էլեկտրակայանի և հզոր ջերմա-էլեկտրակայանների մակետները, մետալուրգիական կոմբինատի գործող մակետը և պողպատի անընդմեջ լցման կայանքը, ծրագրով ղեկավարվող հաստոցների նմուշներ, կոնտուրային հաղորդիչներ ստանալու համար ուլտրաձայնային հաստոցներ և այլն։

Զննելով սովետական արդյունաբերության տեխնիկայի ներկայացված հարուստ ու բազմազան զինանոցը, սովետական ցուցահանդեսի շատ այցելուներ հաճախ մեր էքսկուրսավարներին հարցնում են՝ «սովետական ֆաբրիկաներում և գործարաններում կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման արմատավորումը արդյո՞ք առաջ չի բերում գործազրկություն»։ Այդ հարցը դժվար չէ հասկանալ։ Չէ՞ որ ԱՄՆ-ում, հատկապես վերջին տարիներին, հարյուր հազարավոր, եթե ոչ միլիոնավոր, աշխատավորներ արդյունաբերության պրոցեսների ավտոմատացման հետևանքով մնացել

*են առանց աշխատանքի։ Մեր էքսկուրսավարները հանգամանորեն բացատրում են, որ Սովետական Միությունում ավտոմատացումը չի կարող առաջ բերել գործազրկություն, որ նա թեթևացնում է բանվորների աշխատանքը և բարելավում նրա բարեկեցությունը։*

*Ստենդներում ցուցադրված են սովետական մարդատար «ԶԻԼ—111» և «Զայկա» ավտոմեքենաներ, վերջին ձևի տրակտորներ, գյուղատնտեսական նոր մեքենաներ, ինքնագնաց շասսիներ, ռեակտիվ և պտուտակավոր մարդատար ինքնաթիռների մոդելներ։ Ահա աշխարհում ամենամեծ մարդատար «ՏՈՒ—114» ինքնաթիռի մոդելը, որը 11 ժամում Մոսկվայից—Նյու-Յորք կատարեց անվայրէջք թռիչք։ Նրա մոտ միշտ այցելուների մեծ խումբ կա։ Այդ նրանք են, որոնց չի հաջողվել ինքնաթիռը դիտել բնական վիճակում, երբ նա կանգնած էր «Այդուլուայլդ» օդանավակայանում, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի առաջին տեղակալ Ֆ. Ռ. Կոզլովի ԱՄՆ ժամանելու և ինքնաթիռի լայն մասսայական դիտման ժամանակ։*

*Բազմաթիվ վերելակներով այցելուները բարձրանում են ցուցահանդեսի երրորդ հար-*



*կը։ Այստեղ նրանք ակնառու կերպով համոզվում են նրանում, թե Սովետական Միությունում ինչպիսի վիթխարի ուշադրություն է դարձվում ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու վրա։*

*Ծանոթանալով ժողովրդական կրթության հաջողությունների, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման, առողջապահության, սոցիալական ապահովության մասին պատմող էքսպոնատների հետ, ցուցահանդեսի այցելուները բազմաթիվ հարցեր են տալիս մեր էքսկուրսավարներին։*

*—Մի՞թե ձեզ մոտ ուսուցումը ձրի է։*

*—Ճի՞շտ է արդյոք, որ ՍՍՌՄ-ում բարձրագույն հաստատությունը վերջացրած ամեն մարդ իր մասնագիտությամբ աշխատանք է ստանում։*

*— Այդ ճի՞շտ է, որ ձեզ մոտ բժշկական սպասարկումը անվճար է։*

*Ստանալով հաստատ պատասխաններ, շատերը չեն թաքցնում իրենց զարմանքը, իսկ ոմանք, անգամ անվստահությունը։ Նույնիսկ ԱՄՆ-ում, օրինակ, բժշկական օգնությունը վճարովի է, ընդ որում շատ թանկ։ Անգամ ոչ բարդ վիրահատման օպե-*

րացիան նստում է հարյուրավոր դոլարներ։ Բարձրագույն և պրոֆեսիոնալ-տեխնիկական հաստատություններում սովորելու համար հարկավոր է մեծ վարձ վճարել։

Ցուցահանդեսը պատմում է ՍՍՌՄ-ում կատարվող բնակարանային շինարարության վիթխարի թափի մասին։ Ահա սովետական մայրաքաղաքի Հարավ-արևմտյան շրջանի մակետը՝ նոր բարեկարգ տներով։ Մոսկվայում, Լենինգրադում և մյուս քաղաքներում կառուցվող բնակելի տների մակետի կողքին դրված է երեք սենյականոց մի բնակարան՝ բնական մեծությամբ։ Շատ ամերիկացիներ երկար ժամանակ կանգնում են ցուցահանդեսի այդ բաժնի առջև։ Եվ այդ հասկանալի է։ Բնակարանային հարցը ԱՄՆ-ում ամենացավոտ հարցերից մեկն է։ Ամերիկյան միլիոնավոր ընտանիքներ Նյու-Յորքում, Չիկագոյում, Ֆիլադելֆիայում և մյուս մեծ ու փոքր քաղաքներում բնակվում են ահավոր պայմաններում, հետնախորշերում։

ԱՄՆ-ում բնակարանային վարձը շատ բարձր է, նա կազմում է աշխատավորների աշխատավարձի մոտ մեկ չորրորդ, իսկ շատ հաճախ մեկ երրորդ մասը։ Տարօրինակ չէ, որ հասարակ ամերիկացիները զարմանում



են, ցուցահանդեսում իմանալով, որ սովետական աշխատավորները բնակարանային վարձ են մուծում իրենց աշխատավարձի միայն մի քանի տոկոսը։

Ցուցահանդեսի էքսպոնատները վկայում են ՍՍՌՄ բազմազգ ժողովուրդների կուլտուրայի ծաղկումը։ Սովետական գեղարվեստական գրականության բազմաթիվ հատորները, կերպարվեստի վարպետների լավագույն նկարներն ու քանդակները,ականավոր գրողների, կոմպոզիտորների և երաժիշտ-կատարողների դիմանկարները, թատրոնի հաջողությունները, կինոյի, գեղարվեստական ինքնագործունեության, սպորտի արտացոլող էքսպոնատները, այդ բոլորը ներկայացված են սովետական ցուցահանդեսում։ Այստեղ ցուցադրվում են կարճամետրաժ դոկումենտալ ֆիլմեր նվիրված մեր Հայրենիքի բնական հարստություններին և տարբեր վայրերի գեղեցկությանը, գիտության, տեխնիկայի և կուլտուրայի բնագավառում սովետական ժողովրդի նվաճումներին։ Ցուցահանդեսի օրերին մեծ հաջողությամբ անցան սովետական երաժշտության և պարերի փեստիվալը, որտեղ մասնակցում էին Մոսկվայի և Լենինգրադի բալետային խմբերից, Պյատնիցկու անվան Պե-

տական ռուսական ժողովրդական խորը, միութենական ռեսպուբլիկաների արվեստի մի շարք ներկայացուցիչներ։

Նյու-Յորքում բացված սովետական ցուցահանդեսի աշխատանքի յուրաքանչյուր օրը վկայում է այն մեծ հետաքրքրության մասին, որ դեպի նա հանդես են բերում ամերիկացիները, ջերմորեն ձգտելով իմանալ ճշմարտությունը Սովետական Միության մասին։ Առաջին օրը ցուցահանդես այցելեցին մոտ 50 հազար մարդ, իսկ նրա աշխատանքի առաջին շաբաթվա ընթացքում, ամենահամեստ հաշիվներով, եղել են օրինակ 300 հազար այցելու։

Ամերիկյան քաղաքական շատ հայտնի գործիչներ, ինչպես նաև գործարար շրջանների ներկայացուցիչներ այցելելով ցուցահանդես, նրա մասին մեծ գովասանքով են խոսում, որոնց նա ցույց է տալիս, թե փոխադարձ առևտրի զարգացման համար ՍՍՌՄ-ում ինչպիսի անսպառ հնարավորություններ կան։ Ցուցահանդեսին մեծ ուշադրություն է դարձնում ամերիկյան մամուլը։ Թերթերն ու ամսագրերը նրա մասին հրապարակում են ընդարձակ հոդվածներ, թղթակցություններ, ֆոտո-նկարներ և ուրիշ նյութեր։ «Բալտիմոր Սան»-ի թղթակից է-



Ֆերգյուսոնը գրում է, որ ցուցահանդեսը ցնցող հաջողություն ունի։ Բազմաթիվ ամերիկացիներ շրջապատում են ցուցահանդեսի թարգմանիչներին և ամենաբազմազան հարցերի տարափ տեղում նրանց վրա։ «Վաշինգտոն պոստ էնդ Թայմս հերալդ» թերթը խմբագրական հոդվածում նշում է, որ ցուցահանդեսում կուլտուրայի և արդյունաբերության շատ բնագավառներում ռուսների հաջողության ցուցադրումը արժանի է ուշադրության։ Ամերիկյան ժողովուրդը, հայտարարում է թերթը, կարող է ավելի շատ բան իմանալ այն բոլորից, ինչ ռուսները բերել են ցուցադրելու համար։ «Դա ազդեցիկ ցուցահանդես է... գրում է «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը։— «Ցուցահանդեսը հիանալի և համոզեցուցիչ է»։

«Ցուցահանդես կատարած մի քանի այցելություններից հետո,— գրում է Չիկագոյի բնակիչ Ռեյ Վիլյամսը,— հավատացած եմ, որ անկանխակալ մարդկանց վրա նա հրաշալի տպավորություն կթողնի, իսկ նրանք մեծամասնություն են կազմում»։

«Ուզում եմ ողջունել սովետական իմ կոլեգաներին տեխնիկայի, կուլտուրայի և գիտության փայլուն հաջողությունների համար։ Ես հիացած եմ նաև գիտա-

կան այդպիսի տեղակայումներով։ Պրինստոնի համալսարանի պրոֆեսոր»։ Այցելու Խ. Բերսը Պլեյնֆիլդայից արտահայտել է իր զգացումները հետևյալ բառերով՝ «Ամենատպավորիչ ցուցահանդեսը... Ես հույս ունեմ որ այդ ցուցահանդեսը միայն կծառայի սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավմանը»։ «Ես գտնում եմ, —գրում է իր փայփայած մտքերը ցուցահանդեսի այցելուներից մեկը,— որ մենք կարող ենք և պարտավոր ենք լինել բարեկամներ։ Այդպես էլ բարեկամներ կլինենք»։

Այո, Նյու-Յորքի մեր ցուցահանդեսը իսկապես բաց է անում շատ ամերիկացիների աչքերը, հնարավորություն է տալիս նրանց ՍՍՌՄ-ի և նրա խաղաղասիրական ձգտումների մասին իմանալ ճշմարտությունը, օգնում է նրանց ազատվելու Սովետական երկրի մասին շատ նախապաշարմունքներից և կեղծ պատկերացումներից, որը ներշնչել են «Սառը պատերազմի» կողմնակիցների կեղծ պրոպագանդան և Սովետական Միության ու Ամերիկայի Միացյալ Նահանգների ժողովուրդների մերձեցման ու բարեկամության հակառակորդները։

---



# ՄԵԾ Է ՍԵՓԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԱՌԱՎԵԼՈՒԹՅՈՒՆԸ

Մ. ԳՈՒԼՈՅԱՆ

Էջմիածնի շրջանի Ջրառատ գյուղի կոլտնտեսության մեխանիկ

Երկրորդ տարին է, ինչ մեր կոլտնտեսությունը աշխատում է իր սեփական մեքենաներով։

Չնայած որ անցյալ տարի, նախորդ տարիների համեմատությամբ, մեր կոլտնտեսությունում ավելի քիչ թվով մեքենաներ աշխատեցին, բայց բամբակի, բանջարեղենի, եգիպտացորենի ու մյուս կուլտուրաների ցանքը և հետագա մշակությունը կատարվեց ժամանակին, բարձր որակով։

Ինչպես գարնանացանի, այնպես էլ հետագա աշխատանքների հաջող անցկացմանը մեծ չափով նպաստեց այն, որ մեքենաների աշխատանքը ղեկավարում էր մեկ մարդ՝ կոլտնտեսության նախագահը։ Այլևս հարկ չի լինում տրակտորը մի դաշտից

մյուսը տեղափոխելու համար համաձայնեց-
նել մի երրորդ անձնավորության հետ։ Այդ
հանգամանքը նպաստեց նաև մեքենայա-
կան պարկի խելացի շահագործմանը, ինչ-
պես նաև տրակտորների և նրանց կցվող
գործիքների ամենօրյա և պարբերական
տեխնիկական խնամքը բարելավելուն։

Գոհացուցիչ են սեփական տեխնիկայի
օգտագործման առաջին տարվա արդյունք-
ները։ Հարյուր հեկտար տարածության բամ-
բակի պլանտացիաների յուրաքանչյուր հեկ-
տարից ստացանք 32 ցենտներ բամբակ,
պլանով նախատեսված 22 ցենտների փո-
մաց, 34 ցենտներ հացահատիկ և 350
ցենտներ բանջարեղեն։ Բարձր բերքին զուգ-
ընթաց խնայեցինք շուրջ 2500 կգ. վառե-
լանյութ, քսանյութ և ավելի քան 3000 ռուբ-
լու արժողությամբ պահեստամասեր։

Մեր տրակտորները ոչ միայն գյուղատըն-
տեսական աշխատանքների մեջ ենք օգտա-
գործում, այլև օգտագործում ենք նաև կոլ-
տնտեսության զանազան աշխատանքներ
կատարելու համար։ Օրինակ ԴՏ—24 տրակ-
տորներով կոլտնտեսականների համար փո-
խադրում են շինանյութեր (քար, ավազ,
փայտ), ինչպես նաև կոլտնտեսության հա-
մար դաշտից փոխադրում ենք առվույտը,



խոտը, սոխը, բամբակը և բազմաթիվ այլ
բեռներ։

Մինչև ՄՏ կայանների վերակառուցումը,
կոլտնտեսությունում բանջարանոցային
կուլտուրաների շատ աշխատանքներ, ինչ-
պիսիք են՝ մարկոսը, ջրատար առուներ հա-
նելը, միջշարային տարածությունների վա-
րը, փխրեցումը, սնուցումը և այլ աշխա-
տանքներ կատարվում էին ձեռքով, որով-
հետև դրանք մեքենայով կատարելը չափա-
զանց թանկ էր նստում կոլտնտեսության
վրա։ Քիչ դեպքեր չեն եղել, երբ կոլտնտե-
սությունը շատ ծախսեր կատարելուց խու-
սափելու նպատակով 5—6 կուլտիվացիա
անելու փոխարեն կատարում էր 3—4-ը։

Բայց այժմ, երբ ինքն է այդ տեխնիկայի
լիիրավ տերն ու տնօրենը, միանգամայն այլ
պատկեր ունի մեքենայական աշխատանքը։

Ոգեշնչված անցած տարվա ձեռք բերված
հաջողություններով, մենք որոշել ենք այս
տարի աշխատել ավելի բարձր ցուցանիշ-
ներով։ Բարձր որակով և սեփական ար-
հեստանոցում ավարտելով մեքենայական
պարկի նորոգման աշխատանքները, այժմ
բերքահավաքի այս եռուն օրերին չկա մի
աշխատանք, որտեղ մուտք չգործի մեխա-
նիզացիան։ Այգեմիջյան վարը, սնուցումը,

կուլտիվացիան կատարում ենք «ԿՎ—35» մարկայի տրակտորով։ Բերքահավաքից առաջ տրակտորով ենք կատարում նաև առվույտների, ցորենի պարարտացումը, փոցխումն ու փոշոտումը։ Սկսած բանջարանոցային կուլտուրաների հողերի մարկումից, վար դնելուց մինչև բամբակի պլանտացիաների ջրատար առուների հանելը, բոլորը կատարում ենք տրակտորով։

Գնալով ավելի արդյունավետ են օգտագործվում մեխանիզատորների ուժերը։ Այսպես, եթե տարիներ շարունակ 8 տրակտորի վրա աշխատում էին նույնքան օգնականներ, որոնք սեզոնային գործը կատարելուց հետո ազատ էին մնում, ապա այս տարի 8 տրակտորի և մեկ «Ս—4» ինքնագնաց կոմբայնի վրա աշխատում են ընդամենը 6 տրակտորիստ և 4 օգնական։ Կադրերի այդ կարգի կոմպլեկտավորումը բավարարում է բոլոր տեսակի աշխատանքները ժամանակին կատարելու համար։ Օրինակ, կոմբայնավարը և մեկ տրակտորիստ միասին օգտագործում են 2 հատ ունիվերսալ տրակտոր և մեկ կոմբայն (նախկինում 6 մարդու փոխարեն), կոմբայնավարին երբեք չի խանգարում ցանքերը մշակող տրակտորի վրա աշխատելը, իսկ այժմ այդ երկու տրակ-



տորիստները «Ս—4» կոմբայնով մասնակցում են հացահատիկի բերքահավաքին։ Հաշվումները ցույց են տալիս, որ կոլտնտեսությունում զգալիորեն կրճատվել է տրակտորային բրիգադային սպասարկող մարդկանց թիվը։

Առաջներում 3 ցանող տրակտորների վրա աշխատող 3 տրակտորիստներից ու նրանց 3 օգնականներից բացի, յուրաքանչյուր շարքացանի վրա նստում էր նաև մեկ ցանող կոլտնտեսական, իսկ հիմա ցանողը հենց ինքը՝ տրակտորիստի օգնականն է և երկուսով պատասխանատու են դառնում այդ կարևոր աշխատանքի համար։ Մի առավելություն էլ մտցրել ենք գործում։ Դա այն է, որ այսօրվա ցանողը պետք է ինքն էլ մշակի, սնուցի, բուժի։ Առաջներում ցանողները և մշակողները տարբեր մարդիկ էին, որի պատճառով երբեմն անախորժ երևույթ էր տեղի ունենում։ Ցանքերի շարքերի համաչափությունը ճիշտ չպահպանելու պատճառով, կուլտիվացիա անող տրակտորիստը տրորում էր շարքերը, երբեմն էլ արմատախիլ անում բույսերը։ Այժմ ումի՞ց կարող է գանգատվել տրակտորիստը, երբ ինքն է ցանում և ինքն էլ պիտի մշակի։

Մեր կոլտնտեսության մեխանիզատորնե-

րը մեծ եռանդով սկսեցին նաև գարնանացանի աշխատանքները։ Վարող տրակտորիստներ Գևորգ Գևորգյանը և Մելիք Մելքոնյանը աշխատանքային 7 օրում ավարտեցին 100 հեկտար բամբակի հողի վարի, փոցխի, չիզելացման և հարթեցման աշխատանքները։ Ցանող տրակտորիստներ Այդին Խաչատրյանը և Վարդգես Թովմասյանը օրական ցանում են 10—12 հեկտար բամբակ։ Սուրեն Ասրյանը իր «ԿԴ—35» տրակտորով կատարում է այգեմիջյան վարը, իսկ Անդրանիկ Սիմոնյանին հանձնարարված է բոլոր հողերի պարարտացման, առվույտների, ցորենի փոշոտման ու փոցխման աշխատանքները։

Մեխանիզատորներից Գագիկ Սիմոնյանը աշխատանքային 3 օրում կոլտնտեսության սեփական ագրեգատով ավարտեց 1100 ոչխարների գարնան խուզի աշխատանքը։

Մենք այժմ պայքարում ենք յոթնամյակի առաջին տարում յուրաքանչյուր հեկտարից 40 ցենտներ բամբակ, 400 ցենտներ բանջարանոցային կուլտուրաներ, 90 ցենտներ խաղող, 650 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա և յուրաքանչյուր կովից 2500 լիտր կաթ ստանալու համար։

---

### ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

### (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

☆ ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման կիսամյա պլանը կատարված է 105 տոկոսով։ 1958 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ արդյունաբերական արտադրության ծավալը մեծացել է 12 տոկոսով։

☆ 1958 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ արտադրված է 1 միլիոն 715 հազար տոննայով ավելի չուգուն, 2 միլիոն 345 հազար տոննայով ավելի պողպատ, 1 միլիոն 670 հազար տոննայով ավելի սև մետաղների գլանվածք, 7,1 միլիոն տոննայով ավելի ածուխ, 7,6 միլիոն տոննայով ավելի նավթ, 12 միլիարդ կիլովատ-ժամով ավելի էլեկտրաէներգիա, 149 հազար տոննայով ավելի հանքային պարարտանյութ, 2 միլիոն 665 հազար տոննայով ավելի ցեմենտ, ավելի քան 3 միլիոն խորանարդ մետրով շատ հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներ ու դետալներ, 50 հազար տոննայով ավելի թուղթ։

☆ Լուրջ հաջողություններ են ձեռք բերվել քիմիական արդյունաբերության գծով։ 1958 թվականի առաջին

կիսամյակի համեմատությամբ սինթետիկ ձյութերի և
պլաստմասսաների արտադրությունն ավելացել է 13
տոկոսով, այդ թվում ալկիդային ձյութերինը՝ 29 տո-
կոսով, ցելյուլոզի եթերներինը՝ 17 տոկոսով, պոլի-
քլորվինիլային ձյութինը և սոպոլիմերներինը՝ 12 տո-
կոսով, էթիլային սինթետիկ սպիրտի արտադրությունն
ավելացել է 54 տոկոսով, սինթետիկ ճարպաթթուների-
նը՝ 59 տոկոսով և այլն։

☆ Զգալի չափով ավելացել է նաև լայն սպառման
ապրանքների արտադրությունը։ 1958 թվականի առա-
ջին կիսամյակի համեմատությամբ, 1959 թվականի
առաջին կիսամյակում արտադրվել են՝ 144 միլիոն քա-
ռակուսի մետրով ավելի գործվածքներ, 16 միլիոն զույ-
գով ավելի կաշվե կոշիկ, 20 միլիոն հատով ավելի
տրիկոտաժե ներքնազգեստ, 3,4 միլիոն հատով ավելի
տրիկոտաժե վերնազգեստ, 50 հազար տոննայով ա-
վելի յուղ՝ հումքի պետական ռեսուրսներից, 690 հա-
զար տոննայով ավելի անարատ կաթնամթերք։

☆ Գյուղատնտեսական մեքենաների արտադրման
գծով՝ տրակտորային գութանների պլանը կատարվել է
123 տոկոսով, տրակտորային հնձիչներինը՝ 107 տո-
կոսով, այդ թվում կախովիներինը՝ 157 տոկոսով, հա-
ցահատիկային ինքնագնաց կոմբայններինը՝ 222 տո-
կոսով, սերմաղտիչ մեքենաներինը՝ 109 տոկոսով և
այլն։

☆ Զգալի նվաճումներ են ձեռք բերվել նաև գյուղա-
տնտեսության զարգացման գործում։ 1959 թվականի



բերքի համար գյուղատնտեսական բոլոր կուլտուրանե-
րի (աշնանացանի և գարնանացանի) ցանքատարածու-
թյունները կազմել են 196 միլիոն հեկտար։

☆ Երկրում աճել է մթերատու անասունների գլխա-
քանակը, այսպես. խոշոր եղջերավոր անասուններինը՝
116 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 110 տոկոսով, խո-
զերինը՝ 118 տոկոսով, ոչխարներինը՝ 106 տոկոսով։

☆ Անցյալ տարվա համապատասխան ժամանակա-
շրջանի համեմատությամբ կոլտնտեսություններում և
սովխոզներում մթերատու անասունների գլխաքանակը
ավելացել է. խոշոր եղջերավոր անասուններինը՝ 7,1
միլիոնով, այդ թվում կովերինը՝ 1,4 միլիոնով, խոզե-
րի գլխաքանակը ավելացել է 6,3 միլիոնով, ոչխար-
ներինը՝ 7,5 միլիոնով։

☆ Աճել է անասնաբուծության մթերքների արտա-
դրությունը։ 1959 թվականի առաջին կիսամյակում
կոլտնտեսություններում և սովխոզներում անցյալ
տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ
արտադրվել են 38 տոկոսով ավելի միս և 19 տոկոսով
ավելի կաթ, ընդ որում մեկ կովի միջին կաթնատվու-
թյունը բարձրացել է 9 տոկոսով։

☆ Մսի գնումների կիսամյա պլանը կատարված է
135 տոկոսով, կաթինը՝ 108 տոկոսով, ձվինը՝ 116 տո-
կոսով և բրդինը՝ 108 տոկոսով։

☆ Պետության կողմից գնված է 2 միլիոն 581 հա-
զար տոննա միս (կենդանի քաշով), այսինքն 815 հա-
զար տոննայով կամ 46 տոկոսով ավելի, քան անցյալ

տարվա առաջին կիսամյակում։ Անցած կիսամյակում գնված է 3 անգամ ավելի միս, քան մթերվել ու գնվել է 1953 թվականի նույն ժամանակամիջոցում։

☆ Գնված է 11 միլիոն 805 հազար տոննա կաթ, այսինքն 2 միլիոն տոննայով կամ 20 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա առաջին կիսամյակում։ Անցած կիսամյակում գնված է 2,5 անգամ ավելի կաթ, քան մթերվել է 1953 թվականի համապատասխան ժամանակամիջոցում և 1 միլիոն 159 հազար տոննայով ավելի, քան ամբողջ 1953 թվականին։

☆ Գնված է 4 միլիարդ 331 միլիոն ձու, այսինքն 1 միլիարդ 32 միլիոնով կամ 31 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա առաջին կիսամյակում։ Անցած կիսամյակում 1,7 անգամ ավելի շատ ձու է գնված, քան մթերվել էր ամբողջ 1953 թվականին։

☆ Անցյալ տարվա առաջին կիսամյակում գնված է 236 հազար տոննա բուրդ, այսինքն 34 հազար տոննայով ավելի, քան անցյալ տարվա առաջին կիսամյակում և 1,8 անգամ ավելի, քան 1953 թվականի համապատասխան ժամանակամիջոցում։

☆ ՄՏ կայանների վերակառուցումից հետո գյուղատնտեսական տեխնիկա են գնել 56 հազար կոլտնտեսություններ, կամ բոլոր կոլտնտեսությունների 94 տոկոսը։ Նրանք գնել են 512 հազար տրակտոր, 221 հազար հացահատիկային կոմբայն, 543 հազար տրակտորային շարքացան, 450 հազար տրակտորային կուլտիվատոր, 401 հազար տրակտորային գութան, 122



հազար խոտհնձիչ, 99 հազար շարային հնձիչ և շատ այլ մեքենաներ ու սարքավորումներ։

☆ Բացի վերոհիշյալից կոլտնտեսությունները պետությունից լրացուցիչ կերպով գնել են՝ մոտ 100 հազար նոր տրակտորներ և ավելի քան 25 հազար հացահատիկային նոր կոմբայններ և մեծ քանակությամբ գյուղատնտեսական այլ մեքենաներ ու սարքավորումներ։

☆ 1959 թվականի առաջին կիսամյակում, 1958 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, երկաթուղային տրանսպորտը իր բեռնաշրջանառության պլանը կատարել է 112 տոկոսով, ընդհանուր օգտագործման գետային տրանսպորտը՝ 115 տոկոսով, ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտը՝ 130 տոկոսով և նավթամուղ տրանսպորտը՝ 124 տոկոսով։

☆ Պետական պլանով հատկացված միջոցների հաշվին կապիտալ ներդրումների ծավալը, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, մեծացել է 10 տոկոսով, իսկ շինարարական-մոնտաժային աշխատանքների ծավալը՝ 15 տոկոսով։

☆ 1959 թվականի առաջին կիսամյակի վերջում ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների ընդհանուր թիվը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 1 միլիոն 800 հազարով։

☆ Այս տարվա առաջին կիսամյակում, 1958 թվա-

կանի առաջին կիսամյակի համեմատությամբ, բնակչությանը ավել է վաճառվել՝ միս, երշիկեղեն և այլ մսամթերք՝ 121 տոկոսով, կաթ և կաթնամթերք՝ 123 տոկոսով, շաքար՝ 109 տոկոսով, միրգ՝ 136 տոկոսով, բանջարեղեն՝ 108 տոկոսով, բրդե գործվածքներ՝ 119 տոկոսով, հագուստ և սպիտակեղեն՝ 112 տոկոսով, և այլն։

☆ Անցած ուսումնական տարում բացվել է 1.300 նոր միջնակարգ դպրոց։ Միջնակարգ և հանրակրթական դպրոցներ ավարտել են 1 միլիոն 400 հազար մարդ։

☆ Երկրի կինոստուդիաները թողարկել են 56 նոր լիամետրաժ գեղարվեստական, խրոնիկալ-դոկումենտալ և գիտա-հանրամատչելի ֆիլմեր, 1958 թվականի առաջին կիսամյակի 48 ֆիլմի դիմաց։ Կինոսարքերի թիվը կազմել է 84 հազար, որը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 9 հազարով։ Կինոսեանսներն այցելած հանդիսականների թիվը ավելացել է մոտ 170 միլիոնով։

☆ Լուրջ զարգացում է ստացել բնակարանային և կուլտ-կենցաղային շինարարությունը։ Պետական միջոցներով կառուցվել և շահագործման են հանձնվել 13,6 միլիոն քառակուսի մետր մակերեսով բնակելի տներ, այսինքն 1,5 միլիոն քառակուսի մետրով կամ 13 տոկոսով ավելի, քան շահագործման է հանձնվել 1958 թվականի առաջին կիսամյակում։

---



## ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԳԱՅԻՆ ՄԵԾ ՏՈՆԸ

Այս տարվա օգոստոսի 23-ին ռումինական ժողովուրդը մեծ հանդիսավորությամբ տոնելու է իր ազատագրության 15-րդ տարեդարձը։ 1944 թվականի օգոստոսի 23-ին հերոսական Սովետական Բանակը, Ռումինիայի հայրենասիրական ուժերի հետ միասին խորտակիչ հարված հասցրեց թշնամուն և երկիրը ազատագրեց ֆաշիստական ստրկությունից։ Այդ օրվանից ռումինական ժողովուրդը բանվորական պարտիայի ղեկավարությամբ իշխանությունը վերցրեց իր ձեռքը և սկսեց նոր կյանք կառուցել։

Ժողովրդական իշխանության տարիներին Ռումինիայի աշխատավորները վիթխարի հաջողություններ ձեռք բերեցին արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի ծաղկման ու բարգավաճման բնագավառում։ Կարճ ժա-

ժամանակում Ռումինիան հետամնաց երկրից
վերածվեց ինդուստրիալ-ագրարային ա-
ռաջնակարգ երկրի, հաջողությամբ սոցիա-
լիզմ է կառուցում։
1958 թվականին Ռումինիան արդյու-
նաբերական համախառն արտադրանքի ար-
տադրությամբ ավելի քան 4 անգամ գերա-
զանցեց 1938 թվականի մակարդակը։
1959 թվականին, 1955 թվականի համե-
մատությամբ, արդյունաբերության համա-
խառն արտադրանքի թողարկումը աճելու
է 45 տոկոսով։ 1956—1959 թվականներին
երկրում կառուցվել է 38 արդյունաբերա-
կան ձեռնարկություն և 40 նոր ցեխ։
Ծանր արդյունաբերությունը գերազան-
ցապես զարգացնելու քաղաքականության
շնորհիվ, արտադրության միջոցների ար-
տադրությունը 1956—1959 թվականների
ընթացքում աճել է 56 տոկոսով։
Սոցիալիստական արդյունաբերության
փայլուն աճի մասին է հաստատում այն
փաստը, որ 1959 թվականի միայն մեկ ե-
ռամսյակի արդյունաբերական արտադրան-
քըն ավելի շատ է լինելու, քան 1938 թվա-
կանի ամբողջ տարվա արդյունաբերական
արտադրանքը։ Խոշոր հաջողություններ են



ձեռք բերվել հատկապես մեքենաշինության
բնագավառում, որը 1959 թվականին, 1955
թվականի համեմատությամբ, աճելու է 80
տոկոսով։ Նույն ժամանակաշրջանի համե-
մատությամբ սև մետաղի ձուլումն ավելա-
նալու է 70 տոկոսով, պրոկատի թողարկու-
մը՝ 55 տոկոսով, պողպատյա խողովակ-
ներինը՝ 370 տոկոսով, մետալուրգիական
կոքսինը՝ 450 տոկոսով։
1959 թվականին, 1955 թվականի համե-
մատությամբ, քիմիական արդյունաբերու-
թյունը աճելու է 2 անգամ։ Էլեկտրաէներ-
գիայի արտադրությունը մոտենում է 7 մի-
լիարդ կիլովատ-ժամի։ Նավթի արդյունա-
հանությունը 1959 թվականին, 1955 թվա-
կանի համեմատությամբ, կաճի 21 տոկո-
սով։
Մեծ են հաջողությունները նաև ժողո-
վրրդական սպառման ապրանքների ար-
տադրության բնագավառում՝ 1955 թվակա-
նի համեմատությամբ 50 տոկոսով ավելա-
նալու է շաքարի, 23 տոկոսով պատրաստի
հագուստեղենի, ավելի քան 2 անգամ կա-
հույքի արտադրությունը։
Ժողովրդական իշխանության տարինե-
րին բուռն զարգացում է ապրել Ռումինիա-

յի գյուղատնտեսությունը։ Ռեսպուբլիկայի 3 միլիոն 600 հազար գյուղացիական տընտեսություններից մոտ 2 միլիոնը գտնվում է կոլեկտիվ տնտեսություններում և գյուղատնտեսական ընկերություններում։ Երկրում կազմակերպվել են նաև ավելի քան 300 պետական տնտեսություններ, որտեղ լայնորեն մեքենայացված են գյուղատնտեսական աշխատանքները։ Մեքենա-տրակտորային կայաններում և պետական տընտեսություններում այժմ կա ավելի քան 100 հազար գյուղատնտեսական մեքենա, որից 40 հազարը՝ տրակտոր։ Այնինչ 1938 թվականին Ռումինիայում եղել է 25.000 փայտյա արոր և ընդամենը 4858 տրակտոր։

Առաջիկա տարիներին էլ ավելի բարձր զարգացման կհասնի Ռումինիայի գյուղատնտեսությունը։ Նախատեսվում է 1960 թվականին ունենալ 58.000 տրակտոր և մի քանի հազար կոմբայն։ Էլեկտրիֆիկացվելու է ռումինական գյուղը։ Միայն 1945—1955 թվականներին էլեկտրիֆիկացվել է 1250 գյուղ։ Երկրում գործում են 6 գիտահետազոտական ինստիտուտ՝ 58 փորձակայանով։ Հողը պարարտացնելու համար, ներկայումս 10 անգամ ավելի շատ պարարտանյութ



է օգտագործվում, քան 1938 թվականին։ Տարեցտարի ընդարձակվում են ցանքային տարածությունները և բարձրանում հողի բերքատվությունը։ Ցանքատարածություններ մեջ մեծ տեղ է գրավում եգիպտացորենը, որի արտադրությամբ Ռումինիան Եվրոպայում գրավում է առաջին տեղը։ Հացահատիկային կուլտուրաների տարեկան միջին համախառն արտադրանքը 1934—1938 թվականներին եղել է 8 միլիոն 15 հազար տոննա, 1957 թվականին՝ 11 միլիոն 100 հազար տոննա, 1960 թվականին այն կհասնի 15 միլիոն տոննայի։

Շատ մեծ հաջողություններ են ձեռք բերված ժողովրդական կրթության բնագավառում։ Երկրում լիկվիդացված է անգրագիտությունը, մտցված է յոթնամյա պարտադիր ուսուցում։ 1956—1957 ուսումնական տարում ռեսպուբլիկայում ամեն 10 հազար բնակչի ընկնում էր 46 ուսանող, այդ այն ժամանակ, երբ Անգլիայում 10 հազար բնակչին ընկնում էր 27 ուսանող, Ֆրանսիայում՝ 37, Իտալիայում՝ 33։ Ռումինիայում կա 42 բարձրագույն ուսումնական հաստատություն։

Ժողովրդական Ռումինիայում զգալիորեն բարձրանում է աշխատավորների նյու-



յի գյուղատնտեսությունը: Ռեսպուբլիկայի 3 միլիոն 600 հազար գյուղացիական տըն-տեսություններից մոտ 2 միլիոնը գտնվում է կոլեկտիվ տնտեսություններում և գյու-ղատնտեսական ընկերություններում: Երկ-րում կազմակերպվել են նաև ավելի քան 300 պետական տնտեսություններ, որտեղ լայնորեն մեքենայացված են գյուղատնտե-սական աշխատանքները: Մեքենա-տրակ-տորային կայաններում և պետական տըն-տեսություններում այժմ կա ավելի քան 100 հազար գյուղատնտեսական մեքենա, որից 40 հազարը՝ տրակտոր: Այնինչ 1938 թվականին Ռումինիայում եղել է 25.000 փայտյա արոր և ընդամենը 4858 տրակ-տոր:

Առաջիկա տարիներին էլ ավելի բարձր զարգացման կհասնի Ռումինիայի գյուղա-տնտեսությունը: Նախատեսվում է 1960 թվականին ունենալ 58.000 տրակտոր և մի քանի հազար կոմբայն: Էլեկտրիֆիկացվելու է ռումինական գյուղը: Միայն 1945—1955 թվականներին էլեկտրիֆիկացվել է 1250 գյուղ: Երկրում գործում են 6 գիտահետա-զոտական ինստիտուտ՝ 58 փորձակայանով: Հողը պարարտացնելու համար, ներկայու-մըս 10 անգամ ավելի շատ պարարտանյութ



է օգտագործվում, քան 1938 թվականին: Տարեցտարի ընդարձակվում են ցանքային տարածությունները և բարձրանում հողի բերքատվությունը: Ցանքատարածություն-ների մեջ մեծ տեղ է գրավում եգիպտացո-րենը, որի արտադրությամբ Ռումինիան Եվրոպայում գրավում է առաջին տեղը: Հա-ցահատիկային կուլտուրաների տարեկան միջին համախառն արտադրանքը 1934—1938 թվականներին եղել է 8 միլիոն 15 հազար տոննա, 1957 թվականին՝ 11 միլիոն 100 հազար տոննա, 1960 թվականին այն կհասնի 15 միլիոն տոննայի:

Շատ մեծ հաջողություններ են ձեռք բերված ժողովրդական կրթության բնագա-վառում: Երկրում լիկվիդացված է անգրա-գիտությունը, մտցված է յոթնամյա պար-տադիր ուսուցում: 1956—1957 ուսումնա-կան տարում ռեսպուբլիկայում ամեն 10 հազար բնակչի ընկնում էր 46 ուսանող, այդ այն ժամանակ, երբ Անգլիայում 10 հազար բնակչին ընկնում էր 27 ուսանող, Ֆրան-սիայում՝ 37, Իտալիայում՝ 33: Ռումինիա-յում կա 42 բարձրագույն ուսումնական հաստատություն:

Ժողովրդական Ռումինիայում զգալիո-րեն բարձրանում է աշխատավորների նյու-

թական բարեկեցությունը։ Վերջին տասը տարում ազգային եկամուտն աճել է ավելի քան երեք անգամ, որի 75—80 տոկոսը հատկացվում է աշխատավորների կարիքներն ու պահանջմունքները բավարարելու համար։ 1959 թվականին ժողովրդական կրթության, առողջապահության, կուլտուրայի և սոցիալական ապահովության վրա ծախսվելու է պետական բյուջեի 23,3 տոկոսը։ Շատ մեծ հատկացումներ է կատարվելու բնակարանային շինարարության համար։ Միայն վերջին երեք տարում պետության միջոցներով քաղաքներում և ավաններում կառուցվել է 1 միլիոն 400 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն կամ 40 հազար բնակարան, իսկ գյուղացիները անցած 10 տարվա ընթացքում իրենց միջոցներով կառուցել են 250 հազար տուն։

Այժմ Ռումինիայում մշակվում է ժողովրդական տնտեսության զարգացման 15-ամյա պլան, որի իրականացմամբ ավելի մեծ չափերով կծաղկի ու կբարգավաճի Ռումինիայի ժողովրդական տնտեսությունը։

Ռումինական ժողովրդի այդ խոշորագույն հաջողությունների ձեռք բերման գործում մեծ դեր է խաղացել սոցիալիստական լագերի երկրների, առաջին հերթին Սովետական Միության հետ եղբայրական փոխադարձ օգնությունն ու համագործակցությունը։



---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### СЕЛЬСКОХОЗЯЙСТВЕННЫЕ ТЕМЫ



### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ



### В СТРАНАХ НАРОДНОЙ ДЕМОКРАТИЙ



Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 15 1959 г.

ՎՖ 06071 Պատվեր 510 Տիրաժ 8700

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8։
Գինը 50 կոպեկ